## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տիկին Վարսենիկ Թէրզեանի մահուան քառասունքին առթիւ Տէր եւ Տիկին Միհրան Ասորեան եւ Տէր եւ Տիկին Վահէ Բամպուքճեան տասնական Ն.Ֆ.կը նուիրեն Յ. Օնպաշեան սրահին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Երկուշաբթի ժամը 21ին՝ Ազգ. Տան մէջ:

Կը խօսի ՀԱՅՐ ԱԴԱՄԵԱՆ:

Նիւթ.— Լեզուներու միասնական ծագումը եւ հայ լեզուաբանութեան կարեւորութիւնը:

ՄԱՐՍԷՅԼ

ԱՆԺՐԱՏ ՑՂՈՒԹԵԱՆ ՀԱՅ ՔՈՅՐԵՐՈՒ ՆՈՐԱԲԱՑ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻՆ ԱՌԱՋԻՆ ՀԱՆԴԷՍԸ

Այս Կիրակի ժամը 16ին Սալ Մազընօ 90 ՌԻՒ Տ'ՕՊԱՆԵԸ

Ներկայ կ'ըլլայ՝

ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊՍ. ԱՄԱՏՈՒՆԻ

Կը նախագահէ՝

Պ. ԱՐԱՄ ՇԵԽԻԿԵԱՆ

Թատերական ներկայացում

Խմբերգ, արտասանութիւն մանկապարտէզին սան-սանուհիներուն կողմէ:

Հայկական պարեր մեծերու եւ պզտիկներու կողմէ, ղեկավարութեամբ Օր. Ա. Շահմիրեանի:

Գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը կը բերեն Պ. Ս. Պօղոսեան, Օր. Ս. Թիւթէլեան, Պ. Էֆէնտեան, Ա. Ակինեան:

## ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի ժամը 10ին քառասուն Ս. պատարագ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ, Կաթողիկէ Ս.Էջմիածնի տօնին առթիւ պիտի կատարուի մասնաւոր մաղթանք:

Կը նախագահէ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

### ՊԱՐԱՆՑԻԿ ՅԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի կողմէ:

Այս Կիրակի, ժամը 17էն – 23 Մշակոյթի Տան մէջ:

17 Րիւ Պլէօ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Կրընոպլի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 15·30ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ:

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհանուր ժողովը այս Շաբաթ կէսօրէ վերջ, ժամը 3ին, 17 Րիւ Պլէօ, Թէհլիրեան սրահը: Կը խնդրուի բոլոր անդամուհիներէն ներկայ ըլլալ ժողովին:

### ԹԷՅԱՍԵՂԱՆ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Սէն Ժերոմի մասնաճիւղին կողմէ:

Այս Շաբաթ իրիկուն ժամը 21էն մինչեւ կէս գիշեր Սէն Ժերոմի եկեղեցիին կից սրահին մէջ:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՍԵՒՐ

**1961-1962**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ:

Իրենց զաւակները արժանաւորել փափաքող ծնողքներու գործը դիւրացնելու համար կը յանձնարարենք, որ վարժարան առաջնորդեն երախան դպրոցական եւ բժշկական վկայականներով միասին: Փարիզէն դուրս գտնուողները գրաւոր դիմումին միացնեն վերոյիշեալ վկայականները:

Պայմաններու համար դիմել՝ գրաւոր կամ հեռաձայնով.—

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél.: OBS. 18-28

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

### 43-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Յունիս 10, ժամը 21էն մինչեւ լոյս,

**Salle des Fêtes d'Alfortville, 22, Rue Voltaire**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ Կ. ՄԵՀԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ Յ. ԵՂԻՍԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.— Զ. ՓԱՓԱԶԵԱՆ, Զ. ՄՈՒՐԱՏԵԱՆ, Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ (արտասանութիւն):

Մ. ՊՕՂՈՍԵԱՆ (երգ), Վ. ՃԱՊՈՒՐԵԱՆ (ջութակ)

Սօսի պարախումբը հայկական եւ կովկասեան պարերով

ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբը ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ

Խօսնակ՝ ՍՕՆԻԱ ՏԷՐ – ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

ԱՄԲՈՂՋ ԳԻՇԵՐԸ

ՋՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ եւ իր նուագախումբը:

ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

×

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 20·30էն մինչեւ լոյս:

**Hôtel d'Europe, Place Bellecour**

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի Վարուժան կոմիտէի, եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Վարդգէս խումբին:

Յունիս 3ին, Շաբաթ ժամը 20·30ին, ժան տ'Արք սրահին մէջ:

Կը նախագահէ՝ Ընկեր ԱՐՄԵՆԱԿ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

Կը խօսի՝ Ընկ. ՊԵՏՐՈՍ ՋՊՈՒՔՃԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ.— Երգ, արտասանութիւն, նուագ:

Մուտքը ազատ է

×

### ԻՍԻԻ ՄԷՋ

ՅԵՏԱՁԳՈՒԱԾ է աղէտին պատճառով:

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Յունիս 4ին:

Կը խօսի Ընկ. Պ. ՋՊՈՒՔՃԵԱՆ

### ՍԱՐՍԷԼ – ԱՌՆՈՒՎԻԼ

Այս Շաբաթ իրիկուն, խնջոյքով մը ժամը 20·15, Եկեղեցւոյ կից սրահին մէջ Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վարդան Ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի Կամսարեան խումբին:

Կը նախագահէ Կ. ՄԵՀԵԱՆ

Կը խօսի Ժ. ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

Գեղարուեստական բաժին, մասնակցութեամբ քարիստ ԳԱՐԵԳԻՆԻ:

Ճոխ պիւֆէ:

Տախքերու մասնակցութիւն 5 Ն. Ֆ.

×

### ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

4 Յունիս, Կիրակի կէսօրէ ետք: ժամը 15·30ին, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պորտոյի Մուրատ խումբի:

Սալ Աոլաք Սօլֆերինօ, 237, Րիւ Մունէտա, Պորտօ,

Կը նախագահէ Ընկ. Կ. ՏՕՆԷՐԵԱՆ

Կը խօսի՝ Ընկ. ՀՐԱՉ ՀԱՆՏԱԼԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մուտքը ազատ է:

## ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ

## ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ

ՅՈՒՆԻՍ 18, ԺԱՄԸ 15էն 22

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

36, AVENUE DE GAULLE, MONTMORENCY

Մանրամասնութիւնները յետագային:

## ՅԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՍԵՒՐԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ Ի ՆՊԱՍՏ

Փարիզի Մշակոյթի Տան եւ Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանին

Կը նախագահեն Պ. Պ. ՔՈԼԼԱՎԵՐԻ (Թաղապետական խորհրդատու և Լիվրի-Կարկանի քաղաքապետ) եւ ԹՈՒԹԷՆ (Սեւրանի քաղաքապետ)

Կիրակի 4 Յունիս, Լիվրի – Կարկանի քաղաքապետարանի սրահին մէջ

Մասնակցութեամբ Սօսի պարախումբին, ղեկավարութեամբ Տիկ. ՔԻԻԹՆԷՐԵԱՆԻ

Նուագախումբ՝ ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ

ՋԱԽԵՇՏ, մասնակցութեամբ ԳՐԻԳՈՐԵԱՆԻ եւ ՅԱԿՈԲԵԱՆԻ:

Հաղորդակց. միջոցներ.— Էկլիզ Փանթէնէն առնել 147 թիւ օթօպիւսը եւ իջնել Մէրի տը Լիվրի Կարկան:

Կը հրաւիրուի Փարիզի եւ արուարձաններու Հայութիւնը:

Մուտք 4 Ն. Ֆ.







## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ։

Դասախօս՝ Ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ։
Նիւթ՝ Լիբանանի հայ գաղութը ։
Կը հրաւիրուին ընկեր – ընկերուհինե-րը։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Պ. Խաչիկ Պէրպէրեանի մահուան առ – թիւ փոխան ծաղկեպսակի եղած են հե-տեւեալ նուէրները Պոմոնի մէջ.—

Տէր եւ Տիկին Արթիւր Արութեան (աղ-քատներու) քսան Ն. Ֆ., Կարապետ Յարութիւնեան (Հայաստանի թերթին) տասը Ն. Ֆ., Կարապետ Յարութիւնեան (Հայ Արիներու) տասը, Յովհ. Նուբի – ճանեան (Աղքատներու) տասը, Սանտալ-եան (Աղքատներու), տասը, Այրի Տիկին Գուլումեան եւ զաւակունք (Եկեղեցիին) տասը, Պոմոնի հոգեւոր քոյրեր (Աղքատ-ներու) տասը, Յովհ. Յակոբեան (աղ – քատներու) տասը, Յար. Ղազարեան (աղքատներու) տասը, Յար. Ասլանեան (աղքատներու) տասը Ն. Ֆ.։

Պ. Պարէեան (աղքատներու) տասը, Բիւզանդ Վարդերէսեան (աղքատներու) տասը, Յար. Նիկողոսեան (Ֆ. Կ. Խա – չին) տասը, Տիկին Սիրանուշ Մաղաք – եան (աղքատներու) քսան, Պոմոնի Կրոն. Ընկերակցութեան (Կապոյտ Խաչ) տասը, կնքահայրը Պ. Թադէոս (աղքատներու) յիսուն, Պոմոնի Կրօն. Ընկերակցութիւն (աղքատներու) տասը Ն. Ֆ.։

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՍԵՒՐ

**1961-1962**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՐՁԱ-ՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ ։

Իրենց զաւակները արձանագրել փա – փաքող ծնողքներու գործը դիւրացնելու համար կը յանձնարարենք, որ վարժա – րան առաջնորդեն երախան դպրոցական եւ բժշկական վկայականներով միասին ։ Փարիզէն դուրս գտնուողները գրաւոր դիմումին միացնեն վերոյիշեալ վկայա-կանները։

Պայմաններու համար դիմել՝ գրաւոր կամ հեռաձայնով .—

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի եկեղեցւոյ դիւանը շնորհակա-լութեամբ ստացած է հետեւեալ նուէր – ները իր կրթական ձեռնարկներուն հա – մար, Տիկին Յասմիկ Քիւթնէրեան քսան Ն. Ֆ., Տիկին Աղաւնի Աբրահամեան 10 Ն. Ֆ., Այրի Տիկին Մաքրուհի Տէօքմէ – ճեան քառասուն Ն. Ֆ., Տիկին Մարի Գարակէօզեանի մահուան առթիւ։ Պ. Ար-տաշէս Փամպուքճեան քսան Ն. Ֆ. Պ. Հայրապեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի ։



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

## 43-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Յունիս 10, ժամը 21էն մինչեւ լոյս,

**Salle des Fêtes d'Alfortville, 22, Rue Voltaire**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ Կ. ՄԵՀԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.— Զ. ՓԱՓԱԶԵԱՆ, Զ. ՄՈՒՐԱՏ – ԵԱՆ, Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ (արտասանութիւն)։

Մ. ՊՕՂՈՍԵԱՆ (երգ), Վ. ՃԱ ՊՈՒՐԵԱՆ (ջութակ)

Սօսի պարախումբը հայկական եւ կովկասեան պարերով

ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբը ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ

խօսնակ՝ ԱՕՆԻԱ ՏԷՐ – ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

ԱՄԲՈՂՋ ԳԻՇԵՐԸ

ՋՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ եւ իր նուագախումբը ։

ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

×

## ՊՈՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Պոմոնի ՁԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէի, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի ։ Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սե-րունդի եւ Ֆ. Կապ. Խաչի Պոմոնի մասնաճիւղին ։

Այս Շաբաթ, ժամը 21էն մինչեւ լոյս Պոմոնի Ազգ. սրահին մէջ,
(8 էնփաս տը Մոն)

Կը նախագահէ Ընկ. Յ. ԱՂԱՅԵԱՆ

Պիտի խօսին Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ (Փարիզէն) Տիկին ՕՏԷԹ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

եւ Ընկեր Յ. ՆԻԿՈՂՈՍԵԱՆ

Խօսնակ Ընկեր Ս. ՍԱՐԳԻՍԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.— Ս. Զէօրէքճեան (ջութակ), Օր. Արմինէ Գալբագեան (դաշնակ), Զարեհ Գասեան (երգ), Օր. Սեդա Թիւ-թէլեան, Պ. Գրիգոր Քէնտիրեան (արտասանութիւն), փոքրիկն Ծօշկունեան (ձեռնադաշնակ), Հայկական խմբապարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդի պարախում-բին կողմէ ։ Կէս գիշերէն վերջ եւրոպական պարեր ընկերակցութեամբ հանրածա-նօթ ՍԵՐԺ ԿԱՐՕ նուագախումբին ։

Խճողումի տեղի չտալու համար նախապէս ապահովեցէք ձեր սեղանները հե-տեւեալ ընկերներէն,— Վարդանեան, Նիկողոսեան, Սարգիսեան, Դարբին-եան, Տօլպաշեան, Տէրտէրեան ։ Ճոխ պիւֆէ եւ ըմպելիներ ։

ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ

# ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ

# ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ

ՅՈՒՆԻՍ 18, ԺԱՄԸ 15էն 22

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

36, AVENUE DE GAULLE, MONTMORENCY

Մանրամասնութիւնները յետաղայն ։

## Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ

# ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆԻՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

Ի նպաստ իր բարեսիրական ու կրթական ձեռնարկներուն ։

ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 11

Առաւօտէն մինչեւ երեկոյ

ԼԸ ՓԷՔ

3, Avenue Grandchamp

×

Հանդիսաւոր պատարագ ժամը 11ին

Բացօթեայ հիւրասիրութիւն, ճաշ ժամը 13ին՝ ընթրիք ժամը 19ին ։

Ճոխ ճաշացուցակ՝ մատչելի գիներով։

Գեղարուեստական բաժին եւ զբօսալի խաղեր ։

Ա.— ՀՐԱՇԱԳՈՐԾ ՁԿՆՈՐՍՈՒԹԻՒՆ ՄԸ Երգախառն ներկայացում հայերէն

**Plus de surmenage scolaire**

Ծիծաղաշարժ զաւեշտ ֆրանսերէն

Հաղորդակցութեան միջոցներ .—

ՇՈԳԵԿԱՌՔ՝ Սէն Լազարէն մեկնելով իջնել Սէն – ժերմէն – ան – Լէյի կա-յարանը (ՌՁ Լը Փէք), առնել թիւ 258 հանրակառքը եւ իջնել երմիթաժ ։

ՀԱՆՐԱԿԱՌՔ՝ Փոն տը Նէօյիէն 258 թիւը եւ իջնել Էրմիթաժ ։

Օր. ՎԵՐԺԻՆ ՍԱՐԿԱՒԱԳԵԱՆ
Պ. ՌՈՊԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ
Ամուսնացած
3 Յունիս, 1961

Շուազի լը Ռուա Ալֆորվիլ
կնքահայրութեամբ՝ Պ. ԱՐՄԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆի :

## ՆՈՒԷՐ

Փոքրիկն Գլոտ Տէր Ղուկասեան իր մեծ հայրիկին եղբօր՝ Արմենակ Գապաքճեանի յիշատակին տասը Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կապ. Խաչի Անկէնի մասնաճիւղին :

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ:

Դասախօս՝ Ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ:
Նիւթ՝ Լիբանանի հայ գաղութը :
Կը հրաւիրուին ընկեր – ընկերուհինե – րը:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Երիտասարդուհիներու Զաւօ Շանթ խումբին դասախօսութիւնը այս Չորեքշաբթի ժամը 20.30ին, Կապոյտ Խաչի գրասենեակը, 17, Րիւ Պլէօ:
Դասախօս՝ ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՖԷԿԵԱՆ – ՊՈՒՏԱՔԵԱՆ :
Կը հրաւիրուին անդամուհիներ :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Երջանկայիշատակ ազգային բարերար Մկրտիչ Սանասարեանի, կտակակատար Կարապետ Եզեանցի եւ նախկին տեսուչներ Գ. Աբալեանի, Ս. Սողիկեանի, Յ. Մատաթեանի, բոլոր ուսուցիչներուն եւ սաներուն ի յիշատակ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի օր, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ:
Կը հրաւիրուին սաները եւ բարեկամները:



## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են .ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան :

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ : Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ .

Ա) Ֆրանսականը, որ տառացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արեւելեան բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պրըվէի եւ պագալորէայի :

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ :

Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան .—

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)
Հեռաձայն 927 – 01,72



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
## 43-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ
## ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Յունիս 10, ժամը 21էն մինչեւ լոյս,

**Salle des Fêtes d'Alfortville, 22, Rue Voltaire**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ Կ. ՄԵՀԵԱՆ
ԿԸ ԽՕՍԻ Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.— Զ. ՓԱՓԱԶԵԱՆ, Զ. ՄՈՒՐԱՏԵԱՆ, Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ (արտասանութիւն):
Մ. ՊՕՂՈՍԵԱՆ (երգ), Վ. ՃԱՊՈՒՐԵԱՆ (ջութակ)
Սօսի պարախումբը հայկական եւ կովկասեան պարերով
ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ
Երգչախումբը ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ
խօսնակ՝ ՍՕՆԻԱ ՏԷՐ – ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ
ԱՄԲՈՂՋ ԳԻՇԵՐԸ
ՋՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ
ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ եւ իր նուագախումբը :
ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

×

## ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Պօմոնի ՋԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէի, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի : Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի եւ Ֆ. Կապ. Խաչի Պօմոնի մասնաճիւղին :

Այս Շաբաթ, ժամը 21էն մինչեւ լոյս Պօմոնի Ազգ. սրահին մէջ,
(8 էնփաս տը Մոն)
Կը նախագահէ Ընկ. Յ. ԱՂԱՅԵԱՆ
Պիտի խօսին Ընկ. ԱՒԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ (Փարիզէն) Տիկին ՕՏԷԹ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ եւ Ընկեր Յ. ՆԻԿՈՂՈՍԵԱՆ
Խօսնակ Ընկեր Ս. ՍԱՐԳԻՍԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.— Ս. Չէօրէքճեան (ջութակ), Օր. Արմինէ Գալբագեան (դաշնակ), Զարեհ Գասեան (երգ), Օր. Սեդա Թիւթէլեան, Պ. Գրիգոր Քէնտիրեան (արտասանութիւն), փոքրիկն Ծօչկունեան (ձեռնադաշնակ), Հայկական խմբապարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդի պարախումբին կողմէ: Կէս գիշերէն վերջ եւրոպական պարեր ընկերակցութեամբ հանրածանօթ ՍԵՐԺ ԿԱՐՕ նուագախումբին :

Խճողումի տեղի չտալու համար նախապէս ապահովեցէք ձեր սեղանները հետեւեալ ընկերներէն,— Վարդանեան, Նիկողոսեան, Սարգիսեան, Դարբինեան, Տօլպաշեան, Տէրտէրեան : Ճոխ պիւֆէ եւ ըմպելիներ :

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ
### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Այս տարի Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օդափոխութեան կայանի բացումը տեղի պիտի ունենայ Յուլիս չորսին: Արձանագրութեան համար դիմել Հայ Կարմիր Խաչի Կեդրոնատեղին, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, Երկուշաբթի եւ Ուրբաթ առաւօտները. ժամը 10–12 :

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9<sup>e</sup>)

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցական Տարեշրջանի փակման եւ Բարերարներու Օրը
ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 25
Մանրամասնութիւնները յաջորդով:

## Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ
## ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ
### ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆԻՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

Ի նպաստ իր բարեսիրական ու կրթական ձեռնարկներուն :
ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 11
Առաւօտէն մինչեւ երեկոյ
ԼԸ ՓԷՔ
3, Avenue Grandchamp

×

Հանդիսաւոր պատարագ ժամը 11ին
Բացօթեայ հիւրասիրութիւն, ճաշ ժամը 13էն՝ ընթրիք ժամը 19ին :
Ճոխ ճաշացուցակ՝ մատչելի գիներով:
Գեղարուեստական բաժին եւ զբօսալի խաղեր :
Ա.— ՀՐԱՇԱԳՈՐԾ ՁԿՆՈՐՍՈՒԹԻՒՆ ՄԸ Երգախառն ներկայացում հայերէն

**Plus de surmenage scolaire**

Ծիծաղաշարժ զաւեշտ ֆրանսերէն
Հաղորդակցութեան միջոցներ .—
ՇՈԳԵԿԱՌՔ՝ Սէն Լազարէն մեկնելով իջնել Սէն – Ժերմէն – ան – Լէյի կայարանը (ՈՉ Լը Փէք), առնել թիւ 258 հանրակառքը եւ իջնել Էրմիթաժ :
ՀԱՆՐԱԿԱՌՔ՝ Փոն տը Նէօյիէն 258 թիւը եւ իջնել Էրմիթաժ :

## ՆՈՒԷՐՆԵՐ

ՊՈՐՏՈՅԷՆ Պ. Իչգալացեան 10 Ն. Ֆ. կը նուիրէ Յառաջին, երիցուհի Վեհանուշ Մէրճանեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի:

10 Ն. Ֆ. ալ նոյն նպատակին, իր աղջկան՝ Իրմայի բացառիկ յաջողութեան առթիւ: (Օր. Իրմա Իչգալացեան սթենօթելեֆօնիի ախոյենութիւնը շահած է, վայրկեանը 140 բառերով, սթենօտաք - թիլօներու 46րդ համագումարին):

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ:

Դասախօս՝ Ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ:

Նիւթ՝ Լիբանանի հայ գաղութը:

Կը հրաւիրուին ընկեր – ընկերուհիները:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներն ու խումբերը:

ԹԱԹՈՒԼ, այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15ին:

ՎԱՐԱՆԴԵԱՆ, այս Երկուշաբթի ժամը 21ին:

ԱԿՆՈՒՆԻ, Ուրբաթ (Յունիս 16) ժամը 21ին:

ՀԱՄԱԶԱՍՊ եւ ՀԱՅԱՍՏԱՆ, Շաբաթ (Յունիս 17) ժամը 21ին:

(Շար.)

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Դիւանները պէտք է նախապէս ընկերները տեղեկացնեն ժողովի վայրի եւ թուականի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները:

## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

### ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ — ՀՌՈՄ

ԵՒ

ՇՐՋԱԿԱՅՔԸ

Շաբաթ մը ծովի կեանք՝ Հանր. Սան Մարինոյի մօտ, Ադրիականի աննման աւազին վրայ, ծովեզերեայ նորաշէն եւ հանգստաւէտ պանդոկի մը մէջ:

ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս, 6

ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս, 31

Արձանագրութեանց եւ մանրամասնութեանց համար դիմել.—

Ն. ՄԱՅԻՍԵԱՆ

45, Rue de Trévise, PARIS (9e)

Tél.: TAI. 49-40

(Գաւիթին մէջ)

Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ

11, Avenue Béranger

ARNOUVILLE-LES-GONESSE (S. et O)

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 – 1962 տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են. ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան:

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ: Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ.

Ա) Ֆրանսականը, որ տարացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պրըվէի եւ պագալորէայի:

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ:

Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան.—

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

Հեռաձայն 927 – 01,72

## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

ԴԷՊԻ

### ԵՐԵՒԱՆ

Երեք շաբաթը անգամ մը

ՆԱՒՈՎ

ՄԱՐՍԷՅԼԷՆ ուղղակի դէպի ԵՐԵՒԱՆ

Երթուդարձի գիներն են, կերակուրով

Վերադարձին կարելի է Վենետիկ իջնել

13 ՕՐ ԵՐԵՒԱՆ

Պանդոկի մէջ բնակութեամբ եւ սնունդով

| | |
|---|---|
| Բ. կարգ | 3046 Ն. Ֆ. |
| Գ. կարգ | 2506 Ն. Ֆ. |

ԶԵՂՉ խմբովին ճամբորդողներուն:

ՈՒՂԵԳՈՅՑԻ իրաւունք, անձ գլուխ, 150 քիլօ՝ Բ. կարգի եւ 100 քիլօ՝ Գ. կարգի ճամբորդներուն:

Նոյն ճամբորդութիւնը օդանաւով կամ երկաթուղիով:

Մեր գրասենեակը կը զբաղի նաեւ դէպի Ամերիկա, Սուրիա եւ այլ ճամբորդութիւններով:

ԴԻՄԵԼ՝

ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ

48, Rue de la République

Tél.: 20.47.22

MARSEILLE

●

ՓԱՐԻԶ

Մասնաճիւղ

7, Rue Auber, 7

Tél: RIC. 63-69

PARIS (9e)

## Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ

### ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆԻՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

Ի նպաստ իր բարեսիրական ու կրթական ձեռնարկներուն:

ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 11

Առաւօտէն մինչեւ երեկոյ

ԼԸ ՓԷՔ

3, Avenue Grandchamp

×

Հանդիսաւոր պատարագ ժամը 11ին

Բացօթեայ հիւրասիրութիւն, ճաշ ժամը 13ին՝ ընթրիք ժամը 19ին:

Ճոխ ճաշացուցակ՝ մատչելի գիներով:

Գեղարուեստական բաժին եւ զբօսալի խաղեր:

Ա.— ՀՐԱՇԱԳՈՐԾ ՁԿՆՈՐՍՈՒԹԻՒՆ ՄԸ Երգախառն ներկայացում հայերէն

**Plus de surmenage scolaire**

Ծիծաղաշարժ զաւեշտ ֆրանսերէն

Հաղորդակցութեան միջոցներ.—

ՇՈԳԵԿԱՌՔ՝ Սէն Լազարէն մեկնելով իջնել Սէն – Ժերմէն – ան – Լէյի կայարանը (ՌԶ Լը Փէք), առնել թիւ 258 հանրակառքը եւ իջնել Էրմիթաժ:

ՀԱՆՐԱԿԱՌՔ՝ Փոն տը Նէօյիէն 258 թիւը եւ իջնել Էրմիթաժ:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

### 43-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Յունիս 10, ժամը 21էն մինչեւ լոյս,

**Salle des Fêtes d'Alfortville, 22, Rue Voltaire**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ Կ. ՄԵՀԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.— Զ. ՓԱՓԱԶԵԱՆ, Զ. ՄՈՒՐԱՏԵԱՆ, Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ (արտասանութիւն):

Մ. ՊՕՂՈՍԵԱՆ (երգ), Վ. ՃԱ. ՊՈՒՐԵԱՆ (ջութակ)

Սօսի պարախումբը հայկական եւ կովկասեան պարերով

ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբը ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ

խօսնակ՝ ՍՕՆԻԱ ՏԷՐ – ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

ԱՄԲՈՂՋ ԳԻՇԵՐԸ

ՋՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ եւ իր նուագախումբը:

ՄՈՒՏՔ 5 Ն. Ֆ.

×

## ՊՕՄՕՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Պօմոնի ԶԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէի, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի: Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ եւ Ֆ. Կապ. Խաչի Պօմոնի մասնաճիւղին:

Այս Շաբաթ, ժամը 21էն մինչեւ լոյս Պօմոնի Ազգ. սրահին մէջ,

(8 էնփաս տը Մոն)

Կը նախագահէ Ընկ. Յ. ԱՂԱՅԵԱՆ

Պիտի խօսին Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ (Փարիզէն) Տիկին ՕՏԷԹ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ եւ Ընկեր Յ. ՆԻԿՈՂՈՍԵԱՆ

Խօսնակ Ընկեր Ս. ՍԱՐԳԻՍԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.— Ս. Չէօրէքճեան (ջութակ), Օր. Արմինէ Գալբագեան (դաշնակ), Զարեհ Գասեան (երգ), Օր. Սեդա Թիւթէլեան, Պ. Գրիգոր Քէնտիրեան (արտասանութիւն), փոքրիկն Ծօշկունեան (ձեռնադաշնակ), Հայկական խմբապարեր Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ պարախումբին կողմէ: Կէս գիշերէն վերջ եւրոպական պարեր ընկերակցութեամբ հանրածանօթ ՍԵՐԺ ԿԱՐՕ նուագախումբին:

Խճողումի տեղի չտալու համար նախապէս ապահովեցէք ձեր սեղանները հետեւեալ ընկերներէն,— Վարդանեան, Նիկողոսեան, Սարգիսեան, Դարբինեան, Տօլպաշեան, Տէրտէրեան: Ճոխ պիւֆէ եւ ըմպելիներ:

## ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

Լ Ը Փ Է Ք

ԲԱՑՈՒԱԾ ԵՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1961 – 1962

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ

Ուսման ծրագիրն է դասական ընթացք (բուր քլասիք):

Պայմաններու եւ որեւէ լուսաբանութեան համար դիմել գրաւոր կամ հեռաձայնով վարժարանի տեսչութեան:

École Apostolique Arménienne

3, Av. de Grandchmp

LE PECQ (S. et O.) Tél. 963-01-72

## ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս դպրոցին Ղեկավարութեամբ Համօ Նաճարեանի: Դպրոցի աշակերտներու կողմէ պիտի ներկայացուի՝

ԿԻՐԱԿՈՍ ԱՂԱՅԻ ՃԱՇԱՐԱՆԸ

Գեղարուեստական ճոխ բաժին: Հայկական պարեր, երգ, արտասանութիւն: Այս Շաբաթ, ժամը 21ին, Պար Վիատիւքի սրահին մէջ:

Imprimerie Spéciale du journal «Haratch»

32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Երեքշաբթի երեկոյ, ժամը 8·30ին, Մշակոյթի Տան, Շաւարշ Միսաքեան սրահին մէջ: Դասախօս՝ հիւրաբար քաղաքս գտնուող, Աղեքսանդրաբնակ փաստաբան ՍՏԵՓԱՆ ՇԱՀՊԱԶ:

Նիւթը՝ Ճշմարտութիւնը :

Մուտքը ազատ է :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի հաւաքոյթը որ սովորաբար տեղի կ'ունենայ Ռատէի վերնայարկը, այս Երկուշաբթի տեղի պիտի ունենայ Ռէժանի վերնայարկը ժամը 21ին:

Կը խօսի ՏԷՐ ՊԱՐԳԵՒ ՔՀՆՅ. ՄԵՐՃԱՆԵԱՆ: Նիւթ՝ «Քրիստոնեայ եկեղեցիներու վարդապետութեանց հիմնական տարբերութիւնները»:

Իսկ յաջորդ երկուշաբթի պիտի խօսի ՊԷ ԷՆ ՍԷ Ի դրամատան տնօրէններէն՝ Պ. Նշան Հայթայեան, Ռատէի վերնայարկը: Նիւթը պիտի յայտարարուի յետագային :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Հռիփսիմէ Պէրպէրեան, Տէր եւ Տիկին Վահրամ Սինանեան, Տէր եւ Տիկին Մկրտիչ Պէրպէրեան, Տէր եւ Տիկին Կարօ Պէրպէրեան, Տէր եւ Տիկին Նաշիտ Գարիպեան իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն Պօմոնի Պատ. Թաղ. Խորհուրդին, Դպրաց Դասուն, Տ. Վարուժան վրդ. Գապարաճեանի, Արժ. Տ. Հմայեակ հօր եւ ներկայ դպիրներու, որոնք բարեհաճեցան ազգային յուղարկաւորութեամբ յարգել յիշատակը իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, եղբօր, քեռայրին, խնամիին ու ազգականին՝ ողբացեալ

ԽԱՉԻԿ ՊԷՐՊԷՐԵԱՆԻ

(Փոխ դպրապետ եւ երէց անդամ Պօմոնի Դպրաց Դասուն):

Ինչպէս նաեւ շնորհակալութիւն բոլոր անոնց որոնք անձամբ ծաղկեպսակով եւ փոխան ծաղկեպսակի նուիրատուութիւններով մասնակցեցան իրենց սուգին :

## ՆՈՒԷՐ

ՊԱԼԱՔԵԱՆ Ս·Ի ՇԻՐՄԻՆ ՀԱՄԱՐ

Պ. Պ. Յ. Սամուրեան, Կ. Խոզեան, Հ. Արամեան, Ա. Արզումանեան, Փիէր ըՍտամպօլեան, Ժան Հիւէթ, Պ. Թուլումպաճեան, Ս. Օհանեան, Մ. Սահակեան, Ս. Յարութիւնեան, Ն. Ժամկոչեան, Կ. Մատթէոսեան, Յ. Էսկիճեան, Պ. Ֆրէնկիւլեան, Ալիքսան Արութեան, Ղ. Կաքաչեան, Արմ. Թորոյեան, Մ. Աւետիսեան, Ա. Թէրզեան, Ոմն (Մեռլանէն), Ա. Գալայճեան, Գ. Տէր–Յակոբեան, Կ. Փաստրմաճեան, Ա. Զպլազեան, Կ. Միքայէլեան, Ժան Սէֆէրեան, Ս. Սամանեան, Կ. Էլմայեան, Ա. Թէքնէեան, Յկ. Մարգարեան, Գ. Էլմայեան, Կ. Սվազլեան, Պերճ Միհրդատեան, Տիկին Պէշկէօզեան, Արուսեակ Ասատուրեան, Պ. Պ. Կար. Իբրանոսեան, Ա. Սանտալեան, Յակ. Պիպէռեան հինգական Ն. Ֆ.:

(Շար.)

### ՀԱՆԴԷՍ · ՀԱՑԿԵՐՈՅԹ

Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի մասնաժողովը կազմակերպած է Միութեան 55րդ տարեդարձին առթիւ, հանդէսհացկերոյթ մը, որ տեղի պիտի ունենայ Յունիս 11, Կիրակի կէս օրին, Լա Վառէն, «O Շաթօ տէ զ'Իլ»ի հաճելի շրջավայրին մէջ :

Սեղաններու թիւը սահմանափակ ըլլալով, կը խնդրուի կանուխէն արձանագրուիլ, լեցնելով հետեւեալ կտրոնը եւ զայն ղրկելով մեր հասցէին :

ՃԱՇԱԳԻՆ 25 Ն. Ֆ.:

Union Générale Arménienne
de Bienfaisance
11, Square Alboni, Paris (16e)
TRO. 03-18

Ուսանողներու եւ մանուկներու համար կէս գին: (Վճարումը կարելի է ընել դրամատան կամ փօսթի չէքով):

Paris C. 8019-72

Վճարումը ստացուելէ յետոյ կը ղրկուի մասնակցութեան տոմսերը եւ Շաթօ տէ զ'Իլի հաղորդակցութեան միջոցները ցոյց տուող փլանը :

Անուն եւ մականուն

Հասցէ

Մասնակցողներու թիւ

## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներն ու խումբերը :

ԹԱԹՈՒԼ, այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15ին :

ՎԱՐԱՆԴԵԱՆ, այս Երկուշաբթի ժամը 21ին:

ԱԿՆՈՒՆԻ, Ուրբաթ (Յունիս 16) ժամը 21ին :

ՀԱՄԱԶԱՍՊ եւ ՀԱՅԱՍՏԱՆ, Շաբաթ (Յունիս 17) ժամը 21ին:

(Շար.)

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Դիւանները պէտք է նախապէս ընկերներու տեղեկացնեն ժողովի վայրի եւ թուականի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրաց Միութեան ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի, ժամը 3ին, 7 Պուլվար տ'Աթէն, Պառ տիւ Կլոպի սրահին մէջ: Խիստ կարեւոր օրակարգ : Բոլոր անդամներու ներկայութիւնը անհրաժեշտ է : Հակառակ պարագային ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի :

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

ԱՄԱՎԵՐՋԻ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆ
ԵՒ

## ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Դպրոցասէրի խնամակալութեան եւ ծնողքներու կողմէ :

25 Յունիս, Կիրակի, կէսօրէն ետք ժամը 3 – 10, վարժարանին օդասուն պարտէզին մէջ :

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

Գեղարուեստական ճոխ բաժին :

Երգ, պար, մարզանք եւ հաճելի անակընկալներ :

Պիւֆէ մատչելի գիներով, շամփուրով խորոված :

Մուտք 2·50 Ն. Ֆ.

Հաղորդակց. միջոցներ.— Էկլիզ տը Փանթէնէն առնել 146 թիւ հանրակառքը եւ իջնել Րէնսի – Փավիյեօն:

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Ի նպաստ աղէտեալներուն

Առնուվիլէն Տէր եւ Տիկին Նազիկ Եսայեան կը նուիրեն յիսուն Ն. Ֆ., փոխան ծաղկեպսակի, Տիկին Մարի Գարակէօզեանի մահուան առթիւ եւ յիսուն Ն. Ֆ. ալ փոխան հոգեհանգիստի, ի նպաստ Քլամառի եւ Իսի լէ Մուլինոյի աղէտեալներուն Հայ Կարմիր Խաչի միջոցով :

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս եկեղեցւոյ Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի Թաղիս Ս. Թադէոս եկեղեցւոյ մէջ, պիտի պատարագէ եւ քարոզէ (Ամերիկայէն) հիւրաբար քաղաքս գտնուող ՏԷՐ ՎԱՐՈՒԺԱՆ Վ. ԳԱՐԱՊԱՃԵԱՆ: Ս. պատարագի արարողութիւնները տեղի կ'ունենան, Թաղիս դպրաց դասու երկսեռ խումբին կողմէ, ղեկավարութեամբ Պ. Համբարձում Քէյիշեանի : Հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ այս արարողութեան :



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Պ. Ստեփան (Քանէն) եւ Շահան Վահանեան հարիւր Ն. Ֆ. կը նուիրեն Թէհլիրեան սրահին, ընկեր Հրաչ Փափազեանի մահուան տարելիցին առթիւ :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Երեքշաբթի իրիկուն, ժամը 8·30ին, Մշակոյթի Տան, Շաւարշ Միսաքեան սրահին մէջ: Դասախօս՝ հիւրաբար քաղաքս գտնուող, Աղեքսանդրարնակ փաստաբան ՍՏԵՓԱՆ ՇԱՀՊԱԶ:

Նիւթը՝ ճշմարտութիւնը :

Մուտքը ազատ է :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է, Տէր եւ Տիկին Պէրպէրեանի աղջկան, (Ամերիկա) ամուսնութեան առթիւ Տէր եւ Տիկին Ռուբէն Մաթէոսեանէ 25 տոլար պնակ մը կերակուրի փոխէն : Մասնաճիւղը կը յայտնէ իր անկեղծ շնորհակալութիւնները :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկ. Սերովբէ Գալֆայեան կը նուիրեն տասը Ն. Ֆ. ի նպաստ Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օղափ. կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբ. Տիկ. Մարի Գարակէօզեանի մահուան առթիւ:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի դաշտահանդէսը Կիրակի, Յուլիս 2, ամբողջ օրը Թրուա Լիւֆի անտառին մէջ:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ՍԵՒՐ

### 1961-1962

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ :

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքներու գործը դիւրացնելու համար կը յանձնարարենք, որ վարժարան առաջնորդեն երախան դպրոցական եւ բժշկական վկայականներով միասին : Փարիզէն դուրս գտնուողները գրաւոր դիմումին միացնեն վերոյիշեալ վկայականները:

Պայմաններու համար դիմել՝ գրաւոր կամ հեռաձայնով .—

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ
### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը կը հրաւիրէ ծնողքները, որ օր առաջ արձանագրեն իրենց զաւակները օդափոխութեան կայանի համար :

Արձանագրութիւնները կը կատարուին ամէն Չորեքշաբթի եւ Շաբաթ օրերը, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ, ժամը 16–18 Միութեան գրասենեակը :

Համաձայն պետական օրէնքին, կ'ընդունուին միայն մանչեր 6–13 տարեկան, իսկ աղջիկներու համար 6–14: Արձանագրութիւնները կը փակուին Յունիս 15ին:

×

Ֆ. Կ. Խաչի Պօմոնի մասնաճիւղը կը հրաւիրէ ծնողքները որպէսզի արձանագրեն իրենց զաւակները օդափոխութեան կայանի համար, մանչերը 6–13 եւ աղջիկները 6–14 տարեկան:

Փափաքողները արձանագրութեան համար դիմեն՝ 23 Պուլվ. Պօմոն, Տիկին Մ. Տօլպաշեանի :

Իսկ քաղաքը՝ դիմել 26 Ռիւ տէ Քոնվալեսան, Հինգշաբթի առաւօտները :

## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէները ու խումբերը :

ՎԱՐԱՆԴԵԱՆ, այս Երկուշաբթի ժամը 21ին:

ԱԿՆՈՒՆԻ, Ուրբաթ (Յունիս 16) ժամը 21ին :

ՀԱՄԱԶԱՍՊ եւ ՀԱՅԱՍՏԱՆ, Շաբաթ (Յունիս 17) ժամը 21ին:

(Շար.)

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Դիւանները պէտք է նախապէս ընկերներու տեղեկացնեն ժողովի վայրի եւ թուականի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները :

## ՊԱՏԱՐԱԳ
## ՃԱՇ
## ԵՒ
## ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆ

### ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Ուսումնական տարւոյն փակման առթիւ, կիրակի Յունիս 25ին դպրոցի դալարազարդ պարտէզներուն մէջ, ժամը 10·30ին պիտի մատուցուի գոհաբանական հայկական ձայնաւոր պատարագ, աշակերտներու երգեցողութեամբ :

×

Բացօթեայ ճաշ, Ծնողաց Միութեան ջանքերով պատրաստուած, ազգային երգերու խանդավառ մթնոլորտին մէջ :

Մասնակցութիւնը կանխիկ արձանագրութեամբ է, որ կը փակուի Յունիս 20ին: Ճաշագին 17 Ն. Ֆ.:

Ճաշին պիտի յաջորդէ մրցանակաբաշխութիւն :

Դիմել վարժարան,

Tél. : OBS. 18-28



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

*ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ*

## Ա Ղ Ք Ա Տ Ա Խ Ն Ա Մ Ի
# ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ

ՅՈՒՆԻՍ 18, ԺԱՄԸ 15էՆ 22

*ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ*

36, AVENUE CHARLES DE GAULLE, MONTMORENCY

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ - ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

*Ճոխ պիւֆէ, մատչելի գիներ եւ աւանդական չամփուրով խորոված :*

ԽԻՍՏ ԿԱՐԵՒՈՐ.— 200 հոգինոց բացօթեայ ճաշ կէսօրին ժամը 13ին, գին 10 Ն. Ֆ.: Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները: Դիմել Աղքատախնամի գրասենեակը, 32 Րիւ տը Թրէվիզ, (Հեռ. ՓՌՕ. 77–73):

Մուտք 1 Ն. Ֆ. :

ԾԱՆՕԹ.— Շոգեկառք առնել Կար տիւ Նորէն մինչեւ Անկէն: Անցնիլ կամրջակը եւ թիւ վեց օթօպիւսով իջնել Կրօլէի կայանը: Շոգեկառք ժամը 10·12, 10·15, 11·59, 12·05, 12·17, 13·26, 13·54, 14·14, 15·15, 16·17, 16·16, 17·42, 18·17:

ՎԵՐԱԴԱՐՁ.— Ժամը 18·55էն իւրաքանչիւր քառորդ վայրկեանը :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ընկեր Կայծակ Բոյաջեանէ, Մխիթար Հարիւր Ն. Ֆ.։ Պ. Գ. Ամպարեանցէ, Պրիւսէլ տասը Ն. Ֆ.։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

(Եկեղեցւոյ տօնախմբութեան առթիւ)

Պօմոնի Ս. Գ. Լուս. Գրիգոր Նշխարաց Եկեղեցւոյս հիմնարկութեան 30րդ տարեդարձին առթիւ պիտի քարոզէ եւ պատարագէ Տ. ՎԱՐՈՒԺԱՆ ՎՐԴ. ԳԱՊԱՐԱՃԵԱՆ։

Ապա պիտի կատարուի հոգեհանգիստ եկեղեցւոյս հանգուցեալ հիմնադիրներ Պալաքեան Ս. Հօր, Գարեգին Շահլամեանի եւ որդւոց, Աղաճան Դարբինեանի, Ոսկան Անտուրեանի եւ Սահակ Մեսրոպի սրահի բարերար հանգ. Օննիկ Դաւիթեանի եւ եկեղեցւոյ եւ Սահակ Մեսրոպ սրահի հիմնադիրներուն, նուիրատուներուն եւ աշխատողներուն ննջեցելոց հոգւոց ի յիշատակ։

Կը հրաւիրուի Թաղիս եւ Մարսիլիոյ Հայութիւնը՝ ներկայ ըլլալ սոյն յիշատակի արարողութեանց։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՓԱՐԻԶԻ Աղքատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.—

Տիկին եւ Օր. Պօյաճեան քսան Ն. Ֆ., Պ. Զավուշեան, Մոնմորանսիի ծերանոցին յիսուն, Պ. Վարդանեան Մոնմորանսիի ծերանոցին քսան, Տիկին Կիւրեղեան Եազկիւլ Մոնմորանսիի ծերանոցին 40, Պ. Դուրեան Պարոյր հարիւր, Տիկին Շիրինեան Պայծառ, իր քրոջ՝ Ռեբեկա Քըմզեանի եւ Նշան Գալուստեանի յիշատակին հարիւր, Պ. Գաբրիէլեան հինգ, Պ. Տիգրան Ղոնեանց տասը, Տէր եւ Տիկ. Բիւզանդ Պասմաճեան, Մոնմորանսիի ծերանոցին, Ողբ. Վարսենիկ Թէրզեանի մահուան առթիւ քսան, Տիկին Վեհանուշ Ֆրատեան եւ զաւակները, Մոնմորանսիի ծերանոցին յիսուն, Տիկին Վառվառէ Ղազէրեան, ողբացեալ Տիկին Մ. Գարակէօզեանի եւ ողբ. Թագւոր Ահարոնեանի մահուան առթիւ տասը, Տէր եւ Տիկին Մաթոսեան յիսուն, Այրի Տիկին Սերճանեան եւ զաւակները, ողբ. Պ. Բարսեղ Սերճանեանի մահուան առթիւ երեսուն, Այրի Տիկին Զապէլ Խըտըշեան եւ զաւակները, Մոնմորանսիի ծերանոցին, ողբ. Բարսեղ Սերճանեանի մահուան առթիւ 25, Իյնէճեան եւ Գէորգեան ընտանիքներ՝ ողբ. Տիկին Ազատուհի Թորգոմեանի մահուան առթիւ յիսուն, Պ. Պօղոս Գէորգեան, ողբ. Պ. Անդրանիկ Զըրահեանի յիշատակին (մահացած Գալիֆորնիա) քսան, Պ. Յարութիւն Գալֆայեան, ողբ. Տիկին Մ. Գարակէօզեանի մահուան առթիւ քսան, Տիկին Վարսենիկ Փափազեան, ողբ. Պ. Հրանդ Մինասեանի մահուան առթիւ յիսուն, Տիկին Մարանկէօզեան երկու ծերանոցներուն երեսուն, Տէր եւ Տիկին Սրէնճեան, ողբ. Պ. Լեւոն Մանիկեանի մահուան առթիւ, երկու ծերանոցներուն քառասուն Ն. Ֆ.։

Տէր եւ Տիկին Վահրամ Լեւոնեան, Տէր եւ Տիկին Լեւոն Լեւոնեան եւ պարագաները ցաւօք սրտի կը ծանուցանեն իրենց եղբօր, հօրեղբօր եւ ազգականին՝

### ԵՐՈՒԱՆԴ ԼԵՒՈՆԵԱՆԻ

յանկարծական եւ դառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ Յունիս 4ին, Կիրակի օր Լարիպուազիէրի հիւանդանոցին մէջ։

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ 9 Յունիսին, Փարիզի Հայոց եկեղեցին եւ մարմինը ամփոփուեցաւ Պանթէօ՝ Սիմըթիէր Փարիզէնի մէջ։

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ
## ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10.30ին, հայածէս պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի ռատիոկայանէն։

Պատարագիչ՝ Նշան վ. Գարաճէհէեան։
Քարոզիչ՝ Ներսէս Ծ.Վ. Սեթեան։
Նիւթ՝ «Լուսաւորչի հաւատքը»։
Կարճ ալիք՝ 31.10, 25.55 եւ 19.84։
Միջին ալիք՝ 196 մ.։

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ՍԵՒՐ
### 1961-1962

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ։

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքներու գործը դիւրացնելու համար կը յանձնարարենք, որ վարժարան առաջնորդեն երախան դպրոցական եւ բժշկական վկայականներով միասին։ Փարիզէն դուրս գտնուողները գրաւոր դիմումին միացնեն վերոյիշեալ վկայականները։

Պայմաններու համար դիմել՝ գրաւոր կամ հեռաձայնով.—

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փարիզի Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու եւ խումբերու ներկայացուցիչները, այս Ուրբաթ երեկոյ ժամը 21ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբը ընդհ. ժողովի կը հրաւիրէ ընկերները այս Շաբաթ երեկոյ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։ Բոլոր ընկերներէն կը խնդրուի անպայման ներկայ ըլլալ։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն սովորաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէները ու խումբերը։

ԱԿՆՈՒՆԻ, Ուրբաթ (Յունիս 16) ժամը 21ին։

ՀԱՄԱԶԱՍՊ եւ ՀԱՅԱՍՏԱՆ, Շաբաթ (Յունիս 17) ժամը 21ին։

ԶԱՒԱՐԵԱՆ, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին։

ՎՌԱՄԵԱՆ, այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15ին։

ՎԱՐՈՒԺԱՆ (խումբ Լափոմ), այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը 15ին։

(Շար.)

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Դիւանները պէտք է նախապէս ընկերներու տեղեկացնեն ժողովի վայրի եւ Թուականի մասին։ Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները։

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Իսիի Խրիմեան վրաժարանի հանդէսը, Այս Կիրակի, ժամը 16ին, վարժարանին մէջ։

Նախագահութեամբ Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ։

Արտասանութիւն, երգ, մանկական թատերախաղեր եւ հաճելի անակնկալներ։

Կը հրաւիրուի Իսիի գաղութը անխտիր։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի դաշտահանդէսը Կիրակի, Յուլիս 2, ամբողջ օրը Թրուա Լիւֆի անտառին մէջ։




Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

### ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի, Յունիս 25ին, աւանդական Մատաղօրհնութիւն յաւարտ Ս. պատա-րագի: Բազմաձայն երգեցողութիւնները հրաւիրեալ դպիրներու կողմէ, ղեկավա-րութեամբ Երաժտ. Պ. Ն. Սերգոյեանի:

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողո-վուրդը:

**Distribution de Prix de fin d'année aux Elèves de Tebrotzassère**

et

## Grande Fête Champêtre

Au cours de la Fête Annuelle de l'Ecole Tebrotzassère, le Dimanche 25 Juin 1961 toute la jeunesse sera heureuse cette année de pouvoir danser avec les

*DISQUES VOGUE*

et d'applaudir enfin pour la première fois dans ce cadre la jeune révélation de la chanson 1961

**ROSY ARMÈNE, accompagnée de son Ensemble**

Rendez-vous au Raincy le Dimanche 25 Juin, à partir de 15 heures

**Buffet** **Piste de Danse**

*Moyens de communications : Prendre l'autobus* 146 *à l'Eglise de Pantin et descendre* au Raincy-Pavillon.



### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը տեղի կ'ունենայ այս Երկուշաբթի ժամը 21ին՝ Քատէի վերնայարկը:

Պիտի խօսի Պէ էն Սէ Ի դրամատան տնօրէններէն՝

Պ. ՆՇԱՆ ՀԱՅԹԱՅԵԱՆ

(անդամ Ֆրանսայի պաշտպանութեան 3 տարբեր մարմիններու):

Նիւթ՝ «Ի՞նչպէս պաշտպանուիլ աթօ-մական վտանգէն»:

Կը խնդրուի երիտասարդութենէն ներ-կայ ըլլալ այս խիստ այժմէական բանա-խօսութեան՝ որ պիտի կատարուի ֆրան-սերէն:

Իսկ յաջորդ Երկուշաբթին պիտի խօ-սի» ճարտարապետ Պ. Եդուարդ Իւթիւ-ճեան:

### ՅՈՐԲԵԼԵՆԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Լիոնի Հայկազեան վարժարանի հիմ-նարկութեան 25րդ տարեդարձին առթիւ:

Նախաձեռնութեամբ Լիոնի Հայ Կրթ. Մարմնոյն, հովանաւորութեամբ Լիոնի Հայ Ազգ. Միութեան:

Այս Կիրկաի, կէսօրէ ետք ժամը 3ին, Սալ Պօնըրթէրի մէջ, մուտքը՝ Ռոէ-ժան Տամիոօ, վիլէօրպան:

Գինեձօն եւ ընտանեկան խնջոյք:

Առաջինը նուիրուած Հայկազեան վար-ժարանի հիմնադիր եւ մանկավարժուհի՝

ՏԻԿԻՆ ՄԱՐԻ ՇԱՀԻՆԵԱՆԻ

որ 13 տարիներ անձնուիրաբար ծառա-յած է մանուկներու հայեցի դաստիարա-կութեան, ինչպէս նաեւ Օր. ԸՆԾԱՅ ՍՏԵՓԱՆԵԱՆԻ եւ բոլոր անոնց որոնք Լիոնի մէջ սկիզբէն ի վեր սատար հան-դիսացան վարժարանին եւ այլ կրթական գործերու:

Գեղարուեստական բաժին, ղեկավա-րութեամբ Օր. Ընծայ Ստեփանեանի:

Ժապաւէնի պար եւ դպրոցական եր-գեր, արտասանութիւններ, մասնակցու-թեամբ Հայկազեան վարժարանի աշա-կերտներու:

Առատ կերուխում եւ հաճելի անակըն-կալներ:

Մուտքը ազատ է:


imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)


## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արգութեան» խումբը ընդհ. ժողովի կը հրաւիրէ ըն-կերները այս Շաբաթ երեկոյ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Բոլոր ըն-կերներէն կը խնդրուի անպայման ներկայ ըլլալ:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ժողովը այս Շաբաթ իրիկուն, ժամը 21-ին, սովորական հաւաքատեղին:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէնե-րըն ու խումբերը:

ՀԱՄԱԶԱՍՊ եւ ՀԱՅԱՍՏԱՆ, Շաբաթ (Յունիս 17) ժամը 21ին:

ԶԱՒԱՐԵԱՆ, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

ՎՌԱՄԵԱՆ, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

ՎԱՐՈՒԺԱՆ (խումբ Լափոմ), այս կի-րակի, կէսօրէ ետք ժամը 15ին: (Շար.)

ԸՆԿԵՐ ԿԱՐՕ, այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15ին:

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունե-նան իրենց սովորական հաւաքատեղինե-րը: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ըն-կերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Դիւանները պէտք է նախապէս ընկեր-ներու տեղեկացնեն ժողովի վայրի եւ թուականի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները:

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Իսիի Խրիմեան վրաժարանի հանդէսը Այս Կիրակի, ժամը 16ին, վարժարանի մէջ:

Նախագահութեամբ Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿ-ԵԱՆԻ:

Արտասանութիւն, երգ, մանկական թատերախաղեր եւ հաճելի անակնկալ-ներ:

ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ

ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ

## ՏԱՐԵԿԱՆ ԳԱՐՏԵԶԱՀԱՆԴԷՍԻՆ

ՅՈՒՆԻՍ 18, ԺԱՄԸ 15էն 22

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

36, AVENUE CHARLES DE GAULLE, MONTMORENCY

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ – ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներ եւ աւանդական համփուրով խորոված:

ԽԻՍՏ ԿԱՐԵՒՈՐ.— 200 հոգինոց բացօթեայ ճաշ կէսօրին ժամը 13ին, գին 10 Ն. Ֆ.: Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները: Դիմել Աղքատախնամի կեդրոնատեղին, 32 Րիւ տը Թրէվիզ, (Հեռ. ՓՌՕ. 77-73):

**Tombola**

Մուտք 1 Ն. Ֆ.:

ՏԱՆՕԹ.— Շոգեկառք առնել կար տիւ Նորէն մինչեւ Անկէն: Անցնիլ կամրջէն եւ թիւ վեց օթօպիւսով իջնել Կրօլէի կայանը: Շոգեկառք ժամը 10·12, 10·35, 11·59, 12·05, 12·17, 13·26, 13·54, 14·14, 15·15, 16·17, 16·16, 17·42, 18·17:

ՎԵՐԱԴԱՐՁ.— Ժամը 18·55էն իւրաքանչիւր քսան վայրկեանը:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Յունիս 25, Կիրակի առաւօտ, ժամը 11ին, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, 15 Րիւ Ժան Կուժօն, տեղի պիտի ունենայ հոգեհանգստեան պաշտօն, Հ. Բ. Ը. Միութեան հիմնադիր եւ ազգային բարերար՝

ՈՂԲ. ՊՕՂՈՍ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱՅԻ

եւ բարերար Ողբացեալ

ՌԱՓԱՅԷԼ ՄԱՐԿՈՍԵԱՆԻ համար :

Այս մեծ բարերարներուն յիշատակը յարգող հասարակութենէն կը խնդրուի ներկայ ըլլալ :

## ԿԱՊ. ԽԱՉԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Կրընոպլի զոյգ դպրոցներու աշակերտութեան տարեվերջի քննութիւնները տեղի կ'ունենան Կիրակի, Յունիս 25, առաւօտ ժամը 9ին :

Աշակերտութեան մէկ տարուան աշխատանքը քաջալերելու համար, կը հրաւիրուին ներկայ ըլլալ, տեղւոյս ազգային կազմակերպութիւններու ներկայացուցիչները, դպրոցի օժանդակ անդամներն ու փափաքող ծնողքները :

Աշակերտութեան մրցանակաբաշխութիւնը պիտի կատարուի, Միութեան տարեկան դաշտահանդէսին ընթացքին՝ Յուլիս 2ին :

Անձրեւի պարագային՝ Յուլիս 9ին :

## ՊԱՏԱՐԱԳ ՃԱՇ ԵՒ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆ

### ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Ուսումնական տարւոյն փակման առթիւ, կիրակի Յունիս 25ին դպրոցի դալարազարդ պարտէզներուն մէջ, ժամը 10·30ին պիտի մատուցուի գոհաբանական հայկական ձայնաւոր պատարագ, աշակերտներու երգեցողութեամբ :

×

Բացօթեայ ճաշ, Ծնողաց Միութեան ջանքերով պատրաստուած, ազգային երգերու խանդավառ մթնոլորտին մէջ :

Մասնակցութիւնը կանխիկ արձանագրութեամբ է, որ կը փակուի Յունիս 20ին : Ճաշագին 17 Ն. Ֆ. :

Ճաշէն պիտի յաջորդէ մրցանակաբաշխութիւն :

Դիմել վարժարան,

Tél. : OBS. 18-28

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի դաշտահանդէսը Կիրակի, Յուլիս 2, ամբողջ օրը Թրուա Լիւքի անտառին մէջ :

×

Համախարբերդի Մարսէյլի մասնաճիւղի տարեկան դաշտահանդէսը Յուլիս 9ին, Զօխուրեանի ագարակը :

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի 1961 - 1962 տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են. ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան :

Վարժարանին նպատակն է պատրաստել միջնակարգ ուսման պաշարով եւ հայեցի դաստիարակութիւնով օժտուած Հայուհիներ : Ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ .

Ա.) Ֆրանսականը, որ տառացի կերպով կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին, անգլերէն եւ սպաներէն լեզուներով կը պատրաստէ պրըվէի եւ պագալորէայի :

Բ) Հայկականը, որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնքի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ :

Աշակերտուհիներ կ'ընդունի 8 տարեկանէն սկսեալ, մանրամասնութեան համար դիմել հաստատութեան տնօրէնութեան .—

1, Bld. du Nord, LE RAINCY (S. et O.)

Հեռաձայն 927 - 01,72









Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տիկին Հ. Միքայէլեանէ (Քրէ տը Ռոմէն, Վալանս), Շ. Մխաքեան սրահին տասը Ն. Ֆ.:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Գարդուհի Սերճանեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, յաւարտ պատարագի իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԲԱՐՍԵՂ ՍԵՐՃԱՆԵԱՆԻ

մահուան քառասունքին եւ իրենց մօր եւ մեծ-մօր՝

ՄԱՐԻԱՄ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆԻ

մահուան 17րդ տարեդարձին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԵՒ ՄԱՏԱՂՕՐՀՆՈՒԹԻՒՆ

Սէն Ժերոմի Ս. Սահակ-Մեսրոպ եկեղեցւոյ Թաղ. խորհուրդը կը ծանուցանէ Թաղիս եւ շրջակայից բարեպաշտ հայ հասարակութեան թէ Սահակ Մեսրոպայ տօնի առթիւ՝ եկեղեցւոյս շինութեան 32րդ տարելիցին՝ Թաղիս եկեղեցւոյս մէջ այս Կիրակի առաւօտ հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, ի յիշատակ հոգելոյս Գրիգորիս Եպիսկ. Պալագեանի, Տէր Շաւարշ եւ Տէր Սահակ հայրերու, ինչպէս նաեւ եկեղեցւոյս շինութեան եւ պայծառութեան երկար տարիներ ծառայող Թաղեցիներու յիշատակին:

Թաղիս հոգեւոր հովիւ Տէր Եղիշէ խաչկեր քահանայ պիտի պատարագէ եւ քարոզէ:

Այս առթիւ տեղի պիտի ունենայ աւանդական մատաղօրհնութիւն եւ բաշխում յետ պատարագի:

## ԿԱՊ. ԽԱՉԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կապոյտ Խաչի Կրընոպլի զոյգ դպրոցներու աշակերտութեան տարեվերջի քննութիւնները տեղի կ'ունենան Կիրակի, Յունիս 25, առաւօտ ժամը 9ին:

Աշակերտութեան մէկ տարուան աշխատանքը քաջալերելու համար, կը հրաւիրուին ներկայ ըլլալ, տեղւոյս ազգային կազմակերպութիւններու ներկայացուցիչները, դպրոցի օժանդակ անդամները ու փափաքող ծնողքները:

Աշակերտութեան մրցանակաբաշխութիւնը պիտի կատարուի, Միութեան տարեկան դաշտահանդէսին ընթացքին՝ Յուլիս 2ին:

Անձրեւի պարագային՝ Յուլիս 9ին:

## ԽՆՋՈՅՔ

Համախարբերդցիական Հայր. Միութեան Վալանսի մասնաճիւղը խնջոյք մը կազմակերպած է, այս Շաբաթ, Պ. Սիմոնեանի սրճարանը:

Հայրենակիցները սիրով կը հրաւիրուին:

## ՍԷՆ ԼՈՒԻ ԵՒ ՇՐՋ.Ի ՀԱՅՈՒԹԵԱՆ
(Սէնթ-Մարկարիթ, Լա Փօմ, Վալպարել)

Յարգելի հայրենակիցներ,

Յայտնի է ձեզի թէ ներկայ Թաղականութիւնը ընտրուեցաւ 1957 Հոկտեմբերին, ժողովրդային օրինաւոր քուէարկութեամբ:

Նորընտիր Թաղականութիւնս պարտականութիւն ստանձնած էր մեր գաղութին մէջ համերաշխութիւն ստեղծել, վերարծարծել Ազգ. խնդրավառութիւնը եւ եկեղեցին օժտել մնայուն քահանայով:

Մեր պաշտօնավարութեան ընթացքին խնայած չենք այս ուղղութեամբ մեր ջանքերը, մասնաւորապէս քահանայի հարցին շուրջ կատարած ենք կարգ մը դիմումներ՝ ու ուրախ ենք յայտարարելու թէ վերջապէս ստացած ենք պատասխան մը:

Հետեւաբար այս կարեւոր հարցին շուրջ խորհրդակցելու համար՝ ընդհ. ժողովի կը հրաւիրենք հասարակութիւնը անխտիր, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Սէն Լուի դպրոցի սրահին մէջ:

ԹԱՂԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հերոսներու Օրը, Վալանսի մէջ, 23 Յուլիսին, անձրեւի պարագային Յուլիս 30ին:

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ՎԻԷՆ.— Նոր Սերունդի մասնաճիւղը կը կազմակերպէ դաշտահանդէս մը, այս Կիրակի, Լա Թապուրէթի սովորական դաշտին վրայ, մասնակցութեամբ շրջանիս Հ. Յ. Դ. Նոր Սերունդի բոլոր կաղմերուն:

Գեղարուեստական յայտագրին կը մասնակցին Նոր Սերունդի տղաքը եւ ներկայ հասարակութենէն կարող ուժեր:

Առատ կերուխում: Կը նախագահէ՝ ընկեր Հ. ՋԱՔԱՐԵԱՆ:

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած՝ Ֆ. Կ. Խաչի Տէսինի Ազգային դպրոցի Կրթ. Մարմնի կողմէ:

Մասնակցութեամբ դպրոցին աշակերտութեան եւ ղեկավարութեամբ ուսուցիչ Պ. ԹՐԱԳՕՇԻ:

Այս Շաբաթ երեկոյեան ժամը ութին, Հ. Յ. Դ. Տան մէջ:

Բոլոր աշակերտները բեմին վրայ: Արտասանութիւններ, տրամախօսութիւններ, բարոյալից, հաճելի ու զուարթ անակնկալներ: Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ: Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր քաջալերելու աշակերտները:

Մուտքը ազատ է:

## ՊԱՏԱՐԱԳ
## ՃԱՇ
## ԵՒ
## ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆ
### ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Ուսումնական տարւոյն փակման առթիւ, կիրակի Յունիս 25ին դպրոցի դալարազարդ պարտէզներուն մէջ, ժամը 10.30ին պիտի մատուցուի գոհաբանական հայկական ձայնաւոր պատարագ, աշակերտներու երգեցողութեամբ:

×

Բացօթեայ ճաշ, Ծնողաց Միութեան ջանքերով պատրաստուած, ազգային երգերու խանդավառ մթնոլորտին մէջ:

Մասնակցութիւնը կանխիկ արձանագրութեամբ է: Ճաշագին 17 Ն. Ֆ.:

Ճաշին պիտի յաջորդէ մրցանակաբաշխութիւն:

Դիմել վարժարան,

Tél.: OBS. 18-28

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Յառաջիկայ գրական երեկոյթը այս Ուրբաթ ժամը 20.30ին Աճէմեանի ճաշարանը: Ա) Հրաչ Տարօնեան կը կարդայ իր մէկ երգիծախաղը: Բ) Նոր վարչութեան կազմի վաւերացում:

## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէները ու խումբերը:

ՔՐԻՍՏԱՓՈՐ, Շ. Միսաքեան, Նիկոլ Դուման, Մուրատ, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Դիւանները պէտք է նախապէս ընկերներու տեղեկացնեն ժողովի վայրի եւ թուականի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, 101 Ավընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրահը:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Շաբաթ ժամը 21ին, Մշակոյթի տան մէջ: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր խումբի ժողովը այս Ուրբաթ իրիկուն, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 20.30ին, Ահարոնեան ակումբը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Խիստ կարեւոր օրակարգ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 16ին, եկեղեցւոյ սրահը: Օրակարգ.- Յուլիս 9ի դաշտահանդէսի պատրաստութիւն: Կը խնդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ:

ԿԱՊ. ԽԱՉԻ Պուլ. Օտտոյի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Հինգշաբթի ժամը 14.30ին, սովորական վայրը: Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ:

## ԾԱԽՈՒ Է

Տէսինի մէջ, մեկնումի պատճառով ծախու է խանութ մը, որ ամէն տեսակ առեւտուրի կրնայ յարմարիլ: Բնակարան, հինգ սենեակ, կառատուն եւ մթերանոց մը: Յարմար պայմաններ:

Հեռաձայնել.— 495158 (Տէսին-Իզեռի Նահանգ):








Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

ROBERT COLSON

Համդստեան կոչուած դնդապետ – ենթասպայ, պատուոյ լեգէոնի սպայ, զինուորական մետալ,

եւ

Օրիորդ ԷՄԷ ՇԱՄԼԵԱՆ

Ընկերային խնամատարուհի բանակային ուժերու եւ աղջիկ Տոքթ. Շամլեանի:

Կը ծանուցանեն թէ իրենց ամուսնութիւնը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ, Յունիս 24, ժամը 11·30ին Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին:

27, Rue Mazagran, Marseille

13, Rue de la Tripolitaine, Crosne (S. et O.)

ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

Շաւիլի մէջ, Յուլիս 23ին:

ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի, Յունիս 25ին, աւանդական Մատաղօրհնութիւն յաւարտ Ս. պատարագի: Բազմաձայն երգեցողութիւնները հրաւիրեալ դպիրներու կողմէ, ղեկավարութեամբ Երաժտ. Պ. Ն. Սերգոյեանի:

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը:

ԴՊՐՈՑԱԿԱՆ ՔՆՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Ֆ. Կ. Խաչի հայերէնի դասընթացքի նորավարժ աշակերտներու տարեվերջի քննութիւնները տեղի պիտի ունենան Մշակոյթի Տան մէջ, Յունիս 29ին, Հինգշաբթի ժամը 3ին:

Փափաքողները կը հրաւիրուին ներկայ գտնուիլ տեսնելու համար փոքրիկներու աշխատութեան արդիւնքը:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 16ին, եկեղեցւոյ սրահը: Օրակարգ.— Յուլիս 9ի դաշտահանդէսի պատրաստութիւն: Կը խնդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ:

ՄԱՅԻՍ 28

ԱՎԻՆԵՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպութեամբ Ավինեոնի Հ. Յ. Դ. Մուրատ խումբի:

Այս Կիրակի ժամը 15ին, Փոնթէի Քոնթը ծառախիտ անտառը, Հայերուն ծանօթ վայրը:

Կը խօսի Ընկ. Յ. ԱՐԹԻՆԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին:

Երգ, արտասանութիւն, նուագ եւ հայկական պարեր, յատկապէս հրաւիրուած Մարսէյլի Նոր Սերնդականներու կողմէ:

Ճաշը կարելի է միասին բերել, առաւօտէն:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը տեղի կ'ունենայ Ռիւ տը Թրէվիզի Ազգ. Տան մէջ:

Պիտի դասախօսէ լուսարձակի օգնութեամբ ճարտարապետ Պ. Եդուարդ Իւթիւճեան, Հայաստան եւ Երուսաղէմ կատարած իր վերջին ճամբորդութեանց առթիւ:

Ա. մաս.— «Հայաստան» այս Երկուշաբթի:

Բ. մաս.— «Երուսաղէմ» յաջորդ Երկուշաբթի:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ, դռները պիտի գոցուին ժամը 20·50ին:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Գարդուհի Սերճանեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, յաւարտ պատարագի իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԲԱՐՍԵՂ ՍԵՐՃԱՆԵԱՆԻ

մահուան քառասունքին եւ իրենց մօր եւ մեծ-մօր՝

ՄԱՐԻԱՄ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆԻ

մահուան 17րդ տարեդարձին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները:

ՊԱՏԱՐԱԳ

ՃԱՇ

ԵՒ

ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆ

ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Ուսումնական տարւոյն փակման առթիւ, կիրակի Յունիս 25ին դպրոցի դալարազարդ պարտէզներուն մէջ, ժամը 10·30ին պիտի մատուցուի գոհաբանական հայկական ձայնաւոր պատարագ, աշակերտներու երգեցողութեամբ:

×

Բացօթեայ ճաշ, Ծնողաց Միութեան ջանքերով պատրաստուած, ազգային երգերու խանդավառ մթնոլորտին մէջ:

Մասնակցութիւնը կանխիկ արձանագրութեամբ է: Ճաշագին 17 Ն. Ֆ.:

Ճաշին պիտի յաջորդէ մրցանակաբաշխութիւն:

Դիմել վարժարան,

Tél. : OBS. 18-28

## ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

Լ Ը Փ Է Ք

ԲԱՑՈՒԱԾ ԵՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1961 – 1962

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ

Ուսման ծրագիրն է դասական ընթացք (ֆուր ֆլասիք):

Պայմաններու եւ որեւէ լուսաբանութեան համար դիմել գրաւոր կամ հեռաձայնով տեսչութեան:

École Apostolique Arménienne

3, Av. de Grandchmp

LE PECQ (S. et O.) Tél. 963-01-72

## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներն ու խումբերը:

ՔՐԻՍՏԱՓՈՐ, Շ. Միսաքեան, Նիկոլ Դուման, Մուրատ, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունենան իրենց սովորական հաւաքատեղիները: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Դիւանները պէտք է նախապէս ընկերներու տեղեկացնեն ժողովի վայրի եւ թուականի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Շաբաթ ժամը 21ին, Մշակոյթի տան մէջ: Կարեւոր օրակարգ:

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Խիստ կարեւոր օրակարգ:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Կրընոպլի, Լանսէի, Բրնուի բոլոր ընկերները այս Շաբաթ ժամը 21ին, դպրոցի սրահը: Կարեւոր օրակարգ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբը իր խորին երախտիքն ու շնորհակալութիւն – ները կը յայտնէ Մօնթէ – Քարլօբնակ Պ. Ճիլէրճեանի, որ առաջին անգամ մը շինութեան յանձնախումբը քաջալերած էր տասը հազար Ն. Ֆ.ի կարեւոր նուի – րատուութեամբ, այս անգամ ալ կը նը – ւիրէ Լիոնի եկեղեցւոյ շինութեան 5000 Ն. Ֆ.։

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւ – նը շնորհակալութեամբ ստացաւ հետեւ – եալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Ֆիլա – տէլֆիայէն Պ. Պասմաճեանէ հինգ տո – լար, Պ. Արսէն Թէրզեանէ տասը Ն. Ֆ.։ Պ. Եղնիկեանէ հինգ Ն. Ֆ.։

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւ – նը շնորհակալութեամբ ստացած է հե – տեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան. — Տէր եւ Տիկին Մ. Ագասըլեան իրենց Թոռնիկին մկրտութեան առթիւ տասը Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Խտրընէլեան իրենց Թոռնիկին մկրտութեան առթիւ քսան Ն. Ֆ., Պ. Արտաշէս Դանիէլեան քսան, Այրի Տիկին Բ. Մակարեան հանգ. Ալպէռ Տէր – Սարգիսեանի մահուան քառասուն – քին առթիւ երեսուն, Տիկին Սուլթան Սէֆէրեանէ տասը, Պ. Գրիգոր Նուրիկ – եանէ 25 Ն. Ֆ.։

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍ
### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպութեամբ Հայ Արենոյշնե – րու եւ Գայլիկներու ։

Յուլիս ութին, Շաբաթ իրիկուն ժամը 21ին, «Ժիմնազ»ի շքեղ սրահին մէջ ։ (Րիւ տիւ Թէաթրը – Ֆրանսէ) ։

Գեղարուեստական խնամուած բաժին ։

Պիտի բեմադրուի՝ ընտանեկան կեան – քէ առնուած բարոյալից թատերգութիւն մը Ալչուճեանի՝ «Բնաւերները » եւ ծիծաղաշարժ զաւեշտ մը Ե. Օտեանի՝ «Զարշըլը Արթին աղա » ։

Գայլիկները պիտի կատարեն շուէտա – կան մարզանք , իսկ Արենոյշները պիտի պարեն հայկական պարեր ։ 30 հոգինոց պարախումբով ։

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Ֆ. Կ. Խաչի Պօմոնի մասնաճիւղի վար – ժարանին ամավերջի հանդէսը այս Շա – բաթ գիշեր, ժամը 8.30ին, տեղւոյն Ս. Սահակ – Մեսրոպ սրահին մէջ ։

Երկսեռ աշակերտութեան կողմէ պիտի ներկայացուի՝ Յ. Պարոնեանի «Մեծա – պատիւ Մուրացկանները» ։ Հանդէսը պի – տի ունենայ՝ գեղարուեստական կոկիկ բաժին մը, արտասանութիւն, երգ եւ նը – ւագ՝ երկսեռ աշակերտութեան կողմէ ։



## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ
### ԱՐՁԱԿՈՒՐԴՆԵՐԷՆ ԱՌԱՋ

Փակեցէք ձեր առկախ հաշիւները ։

Յունիս 30ին պիտի դադրեցնենք Յա – ռաջի առաքումը այն բաժանորդներուն , որոնք ցարդ չեն փակած իրենց հաշիւը մինչեւ 1960 Դեկտեմբեր 31 ։

Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք մեր բոլոր պարտաճանաչ բա – ժանորդներուն, որոնց կանոնաւոր եւ կանխիկ վճարումները կ'ապահովեն թեր– թին կանոնաւոր հրատարակութիւնը ։

×

Ծանուցումներու առկախ հաշիւներ ու– նեցողներէն եւս կը խնդրենք, որ մինչեւ Յունիս 30 կարգադրեն բոլոր հաշիւները։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

#### ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

Շաւիլի մէջ, Յուլիս 23ին ։

×

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի դաշտահան – դէսը Կիրակի, Յուլիս 2, ամբողջ օրը Թրուա Լիւքի անտառին մէջ։

×

Համախարբերդի Մարսէյլի մասնաճիւ– ղի տարեկան դաշտահանդէսը Յուլիս 9ին, Զոխուրեանի ագարակը ։





Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

ԱԼՖՈՐՎԻԼ. — Հովանաւորութեամբ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆի եւ պատւոյ նախագահու– թեամբ քաղաքապետ Պ. ՊԼԷՕԶի, հայե– ցի դաստիարակութեան ամավերջի հան– դէսը, այս Շաբաթ երեկոյ ժամը ճիշդ 9ին, Սալ Վոլթէր, Թաղապետական սը – րահին մէջ։

Երգ, արտասանութիւն, հայկական եւ կովկասեան պարեր, թատերական նե – կայացում մը, երկու արար, աշակերտ – ներու կողմէ եւ մրցանակաբաշխութիւն ։

Մուտքը ազատ է ։

### ԴՊՐՈՑԱԿԱՆ ՔՆՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Ֆ. Կ. Խաչի Հայերէնի դասընթացքի նորավարժ աշակերտներու տարեվերջի քննութիւնները տեղի պիտի ունենան Մշակոյթի Տան մէջ, Յունիս 29ին, Հինգշաբթի ժամը 3ին ։

Փափաքողները կը հրաւիրուին ներկայ գտնուիլ տեսնելու համար փոքրիկներու աշխատութեան արդիւնքը ։

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողով կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներն ու խումբերը ։

Այս բոլոր ժողովները տեղի կ'ունե– նան իրենց սովորական հաւաքատեղինե– րը։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ըն– կերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Դիւանները պէտք է նախապէս ընկեր– ներու տեղեկացնեն ժողովի վայրի եւ թուականի մասին։ Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները ։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Շաբաթ ժամը 21ին, Մշա– կոյթի տան մէջ։ Կարեւոր օրակարգ ։

